

# ՊԻՈՆԵՐ

6
1977

ՀՈՒՆԻՍԻ 1-Ը ԵՐԵԽԱՆԵՐԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐՆ Է

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՈՐՈՇՄԱՄԲ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿԵՐ ԼԵՈՆԻԴ ԻԼՅԻՉ ԲՐԵԺՆԵՎԸ ԸՆՏՐՎԵՑ ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ։



# ԲՈՒԳՈՎ՛ՆԻԿԻ ԱՊՈՒՇԸ

*ԳՅՈՒՆԹԵՐ ՖՈՅՍՏԵԼ*

**1943**-ի աշնանային օրերին Բուգովնիկը շրջապատող Դալմաթական սարերից քաղաքի շուկան էր գալիս մի տղա, խաղողով լի երկու կողով բարձած իշուկի հետ: Նրա դեմքին մի ապուշ ժպիտ էր խաղում: Սանդալներին՝ թղթե խայտաբղետ ծաղիկներ, իսկ իշուկի ճակատի մազերին ժապավեններ էին կապված:

Պատանին իր կողովները դնում էր աղբյուրի մոտ, ոտքից ոտք էր ցատկոտում ու միալար, երգաձայն կանչում. «Խաղո՛ղ, խաղո՛ղ, խաղող գնեցե՛ք: Խակ ու թթու խաղող գնեցե՛ք»:

Մարդիկ շրջապատում էին տղային ու ծիծաղում: Նրանցից մեկը երբեմն բերանն էր առնում կողովի խաղողից մի հատիկ, կնճռոտում դեմքն ու թքում: Պատանին, սակայն, ծափ էր զարկում, ծիծաղում այնպես, կարծես իր թթու խաղողը մեծ հաճույք էր պատճառել: Եվ երբ արևը դեպի մայրամուտ էր գնում, Գավրիլոն իր շալվարի գրպանում ոչ մի դինար չէր ունենում: Եվ ճակատի մազերին ժապավեններ կրող իշուկը նորից ետ էր տանում խաղողով լի կողովները դեպի Դալմաթիայի լռին սարերը:

Այսպես անցավ մեկ շաբաթ: Առավոտները, երբ կով ցողն իջնում էր քարերին, ապուշ Գավրիլոն շուկա էր բերում իր խակ ու թթու խաղողը: Բուգովնիկի բնակիչները վարժվեցին պատանուն: Գթասիրտ մեկը երբեմն նրան մի բաժակ այծի կաթ կամ մի կտոր հաց էր տալիս: Իսկ Գավրիլոյի խաղողը ոչ ոք չէր գնում:

Այս օրերին հեռու սարերում կրակոցներ էին լսվում: Եվ Բուգովնիկի բնակիչներն իրենց մութ նախասենյակներում ու ցածրիկ սենյակներում քչփչում էին Հարավսլավիայի ազատության համար պարտիզանների մղած պայքարի մասին:

Բուգովնիկը գրաված գերմանացի զինվորներն ստուգում էին փողոցում սարեր գնացող ամեն մեկին:

Մի շոգ կեսօր, երբ Գավրիլոն իր միալար կանչից հոգնած՝ նստել էր խաղողով լի կողովների ստվերում, շուկա մտավ մի թխամաշկ աղջիկ: Նրա կամբյուղի մեջ ոսկեգույն խաղող էր շողշողում, և մի ժամ չանցած, արդեն վաճառել էր ողջը: Նա սկսեց ծաղրել Գավրիլոյին, տրորել նրա սանդալների թղթե ծաղիկները: Զույգ ձեռքերն աղջիկը կանթել էր կողքերին ու ծիծաղում էր. «Սատանան ում սիրում է, նրա խաղողը քացախով է պարարտացնում»: Տղայի աչքերը կայրույթից մթնել էին: Սակայն շուրթերին նույն ապուշ ժպիտն էր:

Այդ ժամանակ գերմանացի զինվորների մի պահակախումբ շուկա մտավ ու մոտեցավ սրանց: Գավրիլոն սկսեց թռչկոտել ու իր միալար երգը երգել: Իսկ ծաղրասեր աղջկա աչքերը նեղացան: Նա սկսեց զինվորների հետ շաղակրատել ու կատակել այնպես, որ շուտով այլևս ոչ ոք ուշք չէր դարձնում ապուշ տղայի վրա:

Հանկարծ Գավրիլոյի դեմքը լրջացավ: Ապուշ ժպիտը չքացավ: Զույգ կողովները պատանին ճարպկորեն ամուր կապեց իշուկին ու հրապարակի միջով քշեց մի խուլ փողոց: Ապա գետնից մի քար վերցրեց ու ռիթմիկ ծեծեց դարպասը: Դարպասի դուռը անձայն բացվեց, ու պատանին իշուկի հետ բակ մտավ:

Այն, ինչ կատարվեց ապուշ Գավրիլոյի հետ բակում, ջրի ծորակի մոտ, տարօրինակ էր: Տղան ճակատից ետ տարավ մազերը: Եվ հանկարծ զույգ խելոք ու մուգ աչքերը նայեցին զամից երկու կողով դուրս բերող մարդկանց:

— Լավ դասավորե՞լ եք, որ չկնգկնգան,— հարցրեց Գավրիլոն:

Նա մի կաշվե դույլ վերցրեց ու ջրեց իշուկին:

— Ժամանակն է, Գավրի՛լո,— ասաց մարդկանցից մեկը,— դու պետք է մինչև մթնշաղ դուրս գաս քաղաքից:

Գավրիլոն նստեց ծորակի մոտ ու ձեռքն ընկղմեց ջրի մեջ: Հետո ասաց հանկարծ.

— Դեռ ծիծաղում էլ էր գերմանացիների հետ այդ անիծված աղջիկը:

Մարդիկ օրօրեցին գլուխները:

Նրանք նորից Գավրիլոյի սանդալներին թղթե ծաղիկներ փակցրին: Եվ երբ նա դուրս եկավ բակից, նորից նույն ապուշ Գավրիլոն էր, որն իր ապուշ ժպիտով թթու խաղողի երգն էր շարունակ կրկնում ու



*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*

ծիծաղաշարժ թռիչքներով իր իշուկին փողոցներով դեպի սարերը քշում:

Գավրիլոն դեռ չէր հասել քաղաքի վերջին տներին, երբ մի նրբանցքից դուրս եկավ թխամաշկ աղջիկն իր կամբյուղով ու վազեց նրա ետևից: Նա խնդում էր իշուկին ու բարձրաձայն ծաղրում պառավնուն:

Ճանապարհի խաչմերուկում գերմանացի զինվորների պահակախումբ էր կանգնած: Գավրիլոյին ու նրա իշուկին տեսնելով, նրանք ծիծաղեցին: Զինվորներից մեկը մի չոփ խրեց Գավրիլոյի մազերի մեջ: Եվ Գավրիլոն ծափ զարկեց ու թռչկոտեց իր իշուկի ու զինվորների շուրջը:

Սակայն մի փոքր հեռվում կանգնած սպան հանկարծ սկսեց խառնշտել կողովի խաղողը: Մի ակընթարթ Գավրիլոյի աչքերը սարսափից չռվեցին: Հետո նա ապուշի պես ժպտաց սպային: Իսկ աղջիկը Գավրիլոյի մազերի միջից դուրս քաշեց չոփն ու նրանով բզեց իշուկին: Վախեցած կենդանին քառատրոփ դեպի սարերը սլացավ փողոցով: Հետո աղջիկը խփեց Գավրիլոյի ոտքերին ու բղավեց.

— Էշն էշի ետևից է վազում:

Եվ Գավրիլոն խոշոր թռիչքներով հետևեց իր իշուկին:

Իսկ աղջիկը սկսեց կատակել զինվորների հետ: Նա վերցրեց իր կամբյուղից խաղողի վերջին հյութալի ողկույզն ու մեկնեց սպային.

— Պարո՛ն սպա, սա ավելի համեղ է, քան ապուշի խաղողը:

Գավրիլոն հասավ իր իշուկին, շնչասպառ կանգ առավ ու ետ նայեց: Ե՛վ զինվորների հռհռոցը, և՛ թխամաշկ աղջկա երգը նրան այնպես կայրացրին, որ նա պոկեց իր սանդալների թղթե ծաղիկներն ու նետեց փողոցի փոշու մեջ: Հետո ետ գցեց ճակատից ցիրուցան մազերը և նեղ կածանով դանդաղ ու տըխուր դիմեց դեպի ժայռերի բարձունքը:

Մոտ մեկ ժամ տևեց Գավրիլոյի ճանապարհորդությունը: Ահա նա վերջապես կանգ առավ, իշուկի մեջքից իջեցրեց կողովները: Գավրիլոն անփույթ ցած էր նետում թթու խաղողը և հոգատարությամբ հավաքում կողովի մեջ թաքցված հատիկները:

Այնուհետև նա նստեց մի քարի, կողովների կողքին, և հառաչեց. «Նա գեղեցիկ է,— մտածում էր նա, — և նրա ձայնը նման է սարյակի գարնանային ճըռվողյունի, բայց նա մի հիմար այծ է, քանի որ այդպես կատակում է գերմանացիների հետ»:

Գավրիլոն ձեռքերը մոտեցրեց բերանին ու բուի կռինչ արձակեց: Ժայռերի մեջ կրկնվեց սուսկալի արձագանքը: Հետո լռություն տիրեց: Գավրիլոն նստել ու սպասում էր: Ժայռերի արանքից բարձրանում էր լուսինը: Գավրիլոյի մտքերը սակայն թխամաշկ աղջկա ու նրա կատակների հետ էին:

Հետո զառիթափից քար գլորվեց: Եվ Գավրիլոն, որի աչքերն արդեն վարժվել էին խավարին, դեպի փոքրիկ հովիտը մագլցող երեք մարդ տեսավ:

Մարդիկ ձեռքերը լուռ մեկնեցին Գավրիլոյին: Նըրանցից մեկը թևատակով անցնող արնոտ վիրակապ ուներ:

— Շա՞տ մարդ է կռիվել,— հարցրեց Գավրիլոն կամաց:

— Սիմոնն ու ծերուկ Բլացոն:

Գավրիլոն մի պահ փակեց աչքերը:

— Ծերուկ Բլացոն,— մրմնջում էր նա,— դեռ երեկ չէ առաջին օրը եկել էր փամփուշտները տանելու:

Մարդիկ նստոտեցին բարձր ժայռի ստորոտում թաքցված քարաբեկորներին: Նրանք իրենց հետ հաց ու ձարպ էին բերել, և Գավրիլոն լուռ ընթրեց նրանց հետ: Գիշերային խավար երկնքում լուսնի կողքով ցնցոտիների պես ամպեր էին լողում: Գավրիլոն նըրանց էր նայում և նորից ու նորից Բուզովնիկի շուկայի թխամաշկ աղջկա մասին մտածում: Վիրակապով մարդը գրպանից հանեց ժամացույցը: Լապտերով կզուշորեն լուսավորեց այն: Հետո անհանգիստ դիմեց դեպի փոքրիկ հովտի եզրը ու ծածուկ նեղ կածանն ի վար նայեց:

— Դուք մա՞րդ եք սպասում,— հարցրեց Գավրիլոն: Պարտիզանները գլխով արին: Այդ ժամանակ գիշերվա մեջ բվեճի կանչ լսվեց: Վիրակապով մարդը դանդաղ իջավ կածանով:

Գավրիլոն վեր թռավ տեղից: Նա նայում էր մարդու ետևից: Կածանով դեպի վեր բարձրացող արագ ոտնաձայներ լսվեցին: Ժայռերի ստվերից դեպի լուսնի

դժգույն լույսն էր գալիս մի աղջիկ: Նա պույց ձեռքերով փարվեց մարդու վզին ու կամացուկ ասաց.

— Հայրի՛կ:

— Վիրակապով մարդը քնքշորեն շոյեց աղջկա թուխ մազերը: Հետո թևը գցեց նրա ուսին ու առաջնորդեց դեպի մյուսները, որ շարունակում էին նստած մնալ ժայռի ստորոտի քարաբեկորներին:

Աղջիկը ձեռքը մեկնեց մարդկանց, հետո չարաճճիորեն քաշեց Գավրիլոյի ականջն ու ծիծաղեց: Բուգովնիկի շուկայի աղջիկն էր:

Գավրիլոն կանգնած էր լուռ ու անճարակ: Նրա ճակատին բարկության ծալքեր էին աճում:

— Քաղաքում նա կանգնում, գերմանացիների հետ ծիծաղում ու կատակում էր:

Վիրակապով մարդը գլխով արեց.

— Դա նրա առաջադրանքն է: Նա պետք է քեզ օգնի ու պաշտպանի:

Գավրիլոյի աչքերը կարմանքից չռվեցին:

— Եվ դրա համա՞ր է նա այնպես ծաղրում, որ մարդու սրտին կպչում է:

Այն ժամանակ աղջիկը մոտեցավ և ձեռքերը պարզեց Գավրիլոյին:

— Բայց, Գավրի՛լո,— ասաց նա լուրջ,— պետք է, որ յուրաքանչյուրը հավատա, որ դու իսկական ապուշ ես: Այլ կերպ ինչպե՞ս պետք է ժամապահների կողքով փամփուշտները սարերը հասնեն:

Աղջիկը չոքեց գետնին ու գրպանի լապտերի լույսով ավազի վրա գծագրեց, թե որտեղ են գերմանացի զինվորները փողոցները հսկում և որքան են նրանք:

Մարդիկ վեր կացան: Վերցրին հրացաններն ու փամփուշտների կապոցները մեջքերին կապեցին: Հետո լռությամբ մագլցեցին ժայռն ի վեր:

Վիրակապով մարդը գրկեց աղջկան ու ճակատը համբուրեց: Հետո սկսեց մյուսների ետևից մագլցել: Երբ արդեն մի փոքր բարձրացել էր, նորից ետ շրջվեց.

— Հետևի՛ր ակնոցավոր կապիտանին:

Աղջիկը գլխով արեց: Լուռ կանգնած էին պատանիներն ու նայում էին մագլցող մարդկանց ետևից, մինչև խավարը կլանեց փամփուշտով լի կողովները, հրացաններն ու մարդկանց: Փոքրիկ հովտում լիակատար լռություն տիրեց: Միայն գիշերային քամին էր կամացուկ երգում ժայռերի արանքներում: Աղջիկը բռնեց Գավրիլոյի ձեռքն ու շշնջաց.

— Հիմա դու արդեն պետք է գնաս, գիշերը շուտով կանցնի: Իսկ առավոտյան նորից պետք է շուկայում կանգնած լինես:

Գավրիլոն արձակեց իր իշուկին չոր ծառից ու կզուշորեն քշեց կառիթափ կածանն ի վար: Նրա կողքին վազում էր աղջիկը:

— Ապուշ ձևանալը դժվար գործ է,— ասաց հանկարծ Գավրիլոն ու կանգ առավ:

Աղջիկը գլխով արեց.

— Դու խիզախ սիրտ ունես:

— Բայց դա ոչ ոք չգիտե:

Գավրիլոն ոտքով մի քար թռցրեց կածանն ի վար: Աղջիկը ժպտաց Գավրիլոյին:

— Ես գիտեմ,— ասաց աղջիկը կամաց:

Գավրիլոն խոր շունչ քաշեց: Նա ճիպոտով խփեց իշուկին: Կենդանին վախեցած մի քանի թռիչք գործեց: Գավրիլոն հետևեց նրան:

Երբ հետևյալ առավոտ վաղորդյան ցողը դեռ նստած էր Բուգովնիկի շուկայի գորշ սալաքարերին, նորից քաղաք մտավ ապուշ Գավրիլոն:

Մի ապուշ ժպիտ էր խաղում նրա դեմքին: Գլխին դրել էր խայտաբղետ թղթե ծաղկեպսակ: Նորից միալար, նվացող ձայնով երգում էր.

— Խաղո՛ղ, խաղո՛ղ գնեցեք, խակ ու թթու խաղող գնեցե՛ք:

Քիչ անց եկավ թխամազ աղջիկն ու կանգնեց Գավրիլոյից ոչ հեռու: Եվ նրա կատակները նորից ստիպում էին մարդկանց, ինչպես և գերմանացի զինվորներին, ծիծաղել: Բայց երբ շուկայի իրարանցումը մի ակնթարթ վանում էր մարդկանց ուշադրությունը պատանիներից, Գավրիլոն ու աղջիկը աչքով էին անում իրար ու ժպտում:

*Գերմաներենից թարգմ.*
*ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԸ*



# ՆԵՐԿԱ Է

*ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ*

Տղան առղեսող, զգույշ մոտեցավ
Դպրոցի շենքին...
Այնտեղ թշնամու շտաբն է հիմա,
Մութն է ոլորվում աչքերի առջև...
Սեպտեմբե՞ր... Ո՞ւր է զանգի ղողանջը...
Սիրտը այնպես է բախում կրծքի տակ,
Որ ասես ինչ-որ ոտնաձայներ են լսվում մոտիկից...
Իսկ հետո պայթյուն: Կրակոց: Տագնապ...
Եվ մթնում ահեղ
Ծատրվանում է բոցը հրդեհի:
Հետո չիմացավ, թե ինչպես հանկարծ
Բռնեցին իրեն...

Այդ նույն դպրոցի բակում, շատ չանցած,
Ճոճվում էր սյունից մի տղա թխաչ:

Եվ այդ նույն տեղում, տարիներ հետո,
Երբ անհետացավ պատերազմ ու մահ,
Մի նոր, բազմահարկ դպրոց բարձրացավ:
Տղայի անունը հավերժ գրանցվեց
10-րդ «Ա»-ի դասամատյանում:
Ամեն առավոտ,
Երբ դպրոցական զանգն է ղողանջում,
Մտնում է տարեց ուսուցիչը ներս
Ու հուզված բացում դասամատյանը.
— Սվետլով Յուրա...—
Հերթապահն իսկույն կանգնում է ոտքի
Ու պատասխանում.
— Սվետլով Յուրան քառասունմեկին
Քաջաբար զոհվեց:

Լռություն:
Հետո սկսում են դասը:



# ԵՎ ԱՆՄԱՀԱՑԱՎ

*ՄՆԱՑԱԿԱՆ ԹԱՐՅԱՆ*

Գերուն հարցրին.
— Դու կոմունի՞ստ ես:
— Ո՛չ, չհասցրի... պիտի դառնայի,
Բայց թեժ կռիվ էր՝ ժամանակ չեղավ:

Զարմանքից սպան աչքերը չռեց,
Անհուն զայրույթը ներսում խեղդելով՝
կրկին հարց տվեց.
— Ուզո՞ւմ ես ապրել...
— Այո՛, հենց դրա համար եմ կռվել...
— Ջահել ես, տղա՛, և շատ տաքարյուն,
Բայց ես բարի եմ,
Հանդգնությունդ տանում եմ, ներում.
Մեծահոգաբար կթողնեմ ապրես,
Միայն պայմանով, որ դու ցույց տաս մեզ՝
Կոմունիստներին,
կոմիսարներին,
հրեաներին:
— Ո՛չ, պարո՛ն սպա, չեմ ծնվել մատնիչ,
Մատնության գնով ստացած կյանքը
հարկավոր չէ ինձ:

Սպան մոլեգնեց, սպան զայրացավ...
Գերին կրծքաբաց մահն իր ընդունեց
Եվ անմահացավ:

# ՈՉԻՆՉ ՉՓՈԽՎԵՑ

*ՇԱՀԵՆ ԹԱԹԻԿՅԱՆ*

Նրան Ալբերտ են ասում միայն դասատուները, ընկերները նրան ասում են Աբո: Ուրեմն, այդ Աբոն ամռանը գնացել էր Ռիգա: Այնտեղից բերել էր լուսանկարներ: Դասամիջոցին տղաները նրա գլխին թափված, իրարից խլելով, նայում էին բացիկները: Աբոն բացատրություններ էր տալիս.

— Ես այստեղ եղել եմ: Սա գիտե՞ք ինչ տեղ է... ո՜ւ, ո՜ւ... չեք կարող պատկերացնել: Ա՛յ, այստեղից ծովն է երևում: Իսկ այստեղ...

Սոնան էլ ուզեց նայել, բայց տեսավ մոտենալու հնար չկա, արհամարհանքով ասաց.

— Պա՜հ, շատ են երևակայում... Աղջիկնե՛ր, եկե՛ք մի՛ էլ մոտեցեք: Ես տանը այնքան լավ բացիկներ ունեմ: Վաղը կբերեմ և չենք էլ ցույց տա նրանց:

— Ոչ էլ ցույց տվեք... զարմացրի՜ն,— ոգևորված բղավեց Աբոն:

Քիչ անց, երբ դասի զանգը հնչեց, Աբոն մոտեցավ Սոնային.

— Հիմի բնագիտություն է, չէ՞... Լաբորատորիայում ես կընստեմ քո կողքին ու քեզ ցույց կտամ:

Այդպես էլ արին:

Աբոն բնագիտության դասին մեկիկ-մեկիկ ցույց տվեց բացիկները, դասատուն մի քանի անգամ նկատողություն արեց: Իսկ դասամիջոցին տղաներն էլ, աղջիկներն էլ ձեռ առան նրանց:

— Էդ ի՞նչ է,— ասացին,— ընկեր եք դարձե՞լ...

Սոնան շատ քարկացավ: Սոնան հատկապես ընկերուհիների վրա շատ քարկացավ: Այնքան քարկացավ, որ համարյա թե ճչաց.

— Հա՛, ընկեր ենք դարձել ու շատ էլ լավ ենք արել: Ձե՞զ ինչ...

— Պա՜հ,— արհամարհանքով ասաց Նազիկն ու մի կողմ քաշվեց:

— Պա՜հ,— ասացին մյուս աղջիկներն էլ ու արհամարհանքով նույնպես մի կողմ քաշվեցին:

Ճիշտն ասած, տղաներն էլ ծիծաղեցին նրանց վրա, հատկապես Մանուկը, որը հայտնի ծաղրասեր էր:

Բայց Աբոն մոտեցավ Մանուկին, մի հատ ծուռ-ծուռ նայեց ու ասաց.

— Ի՞նչ է, չլինի՞ թե ուզում ես վզակոթիդ հասցնեմ...

Մանուկն էլ մի կողմ քաշվեց, դասարանի մյուս տղաներն էլ:

Մի կողմ քաշվեցին, որովհետև ո՞վ կարող էր չափվել Աբոյի հետ: Սոնան, եթե կուզեք իմանալ, շատ էլ ուրախ էր, որ Աբոն իր հետ ուզում է ընկերություն անել: Սոնան առհասարակ դեռ վաղուց էր ուզում, որ Աբոն իր հետ ընկերություն անի, որովհետև հավանում էր նրան: Ինչո՞ւ պետք է չհավաներ: Ուժեղ, խելոք ու անվախ տղա էր Աբոն, նրա պես ընկեր ունեցողը ոչ մի բանից կարող էր չվախենալ:

Ու ճիշտն ասած, Սոնան ու Աբոն այդ օրվանից սկսեցին ընկերություն անել: Միմյանց կարդալու գրքեր էին տալիս, օգնում դասերը պատրաստել, դասերից հետո Աբոն ուղեկցում էր Սոնային ու ամբողջ ճանապարհին նրանք աշխույժ խոսում էին: Ինչի՞ մասին: Կարդացած գրքերի, դասերի, թատրոնի, կրկեսի ու կինոյի: Մի խոսքով, լավ ընկերություն էին անում:

Մի օր էլ Աբոն առաջարկեց.

— Գնանք կինո...

Սոնան թե.

— Եթե մամաս թույլ տա...

Սոնայի մայրիկը թույլ տվեց: Ինչո՞ւ պետք է թույլ չտար: Անանավանդ որ երկուսն էլ խե-



լոք երեխաներ են, երկուսն էլ դասերը ժամանակին պատրաստում են: Սոնայի մայրիկը թույլ տվեց, քանի որ այդ օրը Սոնան տանն էլ մյուս պարտականությունները կատարել էր. արդուկ էր արել, փոքրիկ եղբորն օգնել էր «թվաբի» խնդիրները լուծելու, մի քիչ էլ խոհանոցում էր գործ արել...

Ու նրանք գնացին:

Շատ լավ տրամադրության մեջ էին: Քայլում էին կողք-կողքի ու երկուսն էլ ուրախ էին: Ինչո՞ւ պետք է ուրախ չլինեին:

— Ես որ մեծանամ,— մեկ էլ ասաց Սոնան,— երկրաբան կդառնամ: Այնպես եմ սիրում լեռներն ու դաշտերը չափչըփել... Հետո վտանգներ... Աբո՛, իսկ դու սիրո՞ւմ ես վտանգավոր գործեր...

— Վտանգավո՞ր,— ասաց Աբոն:— Բա չեմ սիրո՞ւմ... Ես, եթե կուզես իմանալ, դրա համար էլ ուզում եմ օդաչուական գնալ: Դրանից վտանգավոր էլ ի՞նչ կա...



— Հա՛,— ասաց Սոնան,— դա շատ վտանգավոր գործ է: Բայց ոչինչ, գնա՛: Ի՞նչ անենք, որ վտանգավոր է, ուրեմն ոչ ոք օդաչու չպիտի՞ դառնա:

Քայլում էին դանդաղ և մինչև տեղ հասան՝ քիչ ժամանակ էր մնացել կինոյի սկսելուն: Դրամարկղում էլ երկար հերթ էր:

— Վա՜յ,— բացականչեց Սոնան:— Մեզ տոմս չի հասնի:

— Ոչինչ,— ասաց Արոն,— մյուս սեանսի համար տոմս կառնենք, մինչև կինոյի ըսկըսվելն էլ մի քիչման կըգանք...

— Չէ, ի՞նչ ես ասում,— անհանգստացավ Սոնան:— Մայրիկս կբարկանա: Մայրիկս ասել է՝ միայն առաջին սեանսին: Ես այդքան չեմ կարող ուշանալ:

— Թե այդ մայրիկները ի՞նչ վատ բան են տեսնում երկրորդ սեանսի մեջ, չեմ հասկանում,— քրթմնջաց Արոն:

Նա չփորձեց հերթ պահել, որովհետև պարզ երևում էր, որ միևնույն է՝ տոմս չի հասնի:

— Դու էստեղ սպասիր՝ ես մի րոպեից կգամ:

Սոնան սպասեց, իսկ Արոն արագ մոտեցավ մի տղայի, որը հենց նոր դուրս էր գալիս հերթից՝ մի քիչ կարմրած, մի քիչ քրտնած, բայց շատ ուրախ, որովհետև կարողացել էր տոմս գնել:

— Լսի՛ր,— ասաց նրան Արոն:— Մի րոպե սպասի՛ր:

Տղան, որ երևի Արոյից մեկ կամ երկու տարով փոքր լիներ՝ սպասեց:

— Լսի՛ր,— ասաց Արոն:— Էդ տոմսերն ի՛նձ տուր: Երկու հատ են, չէ՞, ի՛նձ տուր:

— Ինչպե՞ս թե՝ ինձ տուր,— զարմացավ տղան:— Ինչո՞ւ տամ:

— Այսինքն, ես փողը կըտամ՝ ինչ-որ արժե,— ասաց Արոն:

— Ինչի՞ս է պետք քո փողը:

— Ես քեզ ավել կտամ,— նորից ասաց Արոն:

— Ինչի՞ս է պետք քո ավել փողը,— նորից ասաց տղան:

— Լսի՛ր,— ասաց Արոն ու այս անգամ ինչ-որ երկար մի բան բացատրեց տղային, բայց Սոնան չլսեց, թե ինչ, որովհետև Արոն շատ ցածր ձայնով էր խոսում:

Իսկ տղան ձայնը չէր ցածրացրել, և Սոնան պարզ լսեց, թե ինչպես նա ասաց.

— Չէ, ես ու ընկերս ենք գնալու: Տոմսը քեզ չեմ տա,— ուզեց հեռանալ, բայց Արոն բարկացած նրա թևը բռնեց.

— Չես տա, հա՞,— այս անգամ բարձրաձայն ասաց նա:

Այդ տղան Արոյի կողքին իսկական երեխա էր թվում:

— Չես տա, հա՞,— սպառնալից կրկնեց Արոն:

— Չեմ տա:

Ու այստեղ Արոն... Դե ի՜նչ, նա ոչ միայն ուժեղ էր, այլև շատ ճարպիկ... Արոն անսպասելի շարժումով տղայի ձեռքից տոմսերը խլեց, հետո, նըրա բուռը խոթեց ռուբլիանոցը և արհամարհանքով ասաց.

— Դե գնա՛...

Տղան վշտացած, մոլորված նայեց Արոյին ու բան չասաց: Իսկ Արոն հաղթական շրջվեց, մոտեցավ Սոնային և ուրախ ասաց.

— Դե, գնանք ներս, հիմա սեանսը կսկսվի...

Բայց Սոնան այնպես էր շըփոթվել կատարվածից, որ կարծես չհասկացավ Արոյի ասածը:

— Դե գնանք,— կրկնեց Արոն:

Այս անգամ Սոնան ըսթափվեց.

— Կա՜ց...

Հետո ձայնեց հեռվում դեռ մոլորված կանգնած տղային.

— Արի՛, բան եմ ասում:

Տղան մոտեցավ:

— Տոմսը վերադարձրո՛ւ,— ասաց Սոնան Արոյին:

— Ինչպե՞ս թե,— զարմացավ Արոն:— Ի՞նչ է, մեծ բա՞ն է պատահել, իրենք թող մեկ ուրիշ անգամ գնան կամ մյուս սեանսին...

— Տոմսերը վերադարձրո՛ւ,— կրկնեց Սոնան:

Տղան միջամտեց.

— Լավ, հարկավոր չի: Ինքը ճիշտ է ասում, ես ու ընկերս ուրիշ անգամ կգնանք... Համ էլ ընկերս մի անգամ տեսել է այս կինոն:

— Դե տեսնո՞ւմ ես,— վրա բերեց Արոն:

Բայց Սոնան պնդեց.

— Չէ, դու նախ տոմսե՛րը վերադարձրու...

Սոնան այնպես ազդու էր պահանջում, որ Արոն տոմսերը վերադարձրեց տղային ու մեքենաբար փողն էլ ետ վերցրեց:

— Քեզանից փոքրին ու թույլին նեղացնո՞ւմ ես,— համարյա վիրավորված բացականչեց Սոնան ու, չգիտես ինչու, քիչ մնաց լաց լիներ:

Տղան հանկարծ ասաց.

— Ես փոքր չեմ: Ես փոքր չեմ ու թույլ էլ չեմ: Ես բռնցքամարտի խմբակ եմ գնում ու... Եթե ուզենամ դըրա մռութին էնպես կհասցնեմ, ո՞ր... Բայց ես հո փողոցային չե՞մ, որ կռիվ սարքեմ...

Այդ ասելիս, տղայի աչքերը մի տեսակ փայլեցին, ու տըղան կարծես մի քիչ մեծացավ:

— Ո՞ւմ մտութին,— ինկույն հոխորտաց Աբոն, բայց Սոնան նրան ընդհատեց.

— Չհամարձակվես:

Նրանք մի պահ կանգնած նայում էին իրար:

Տղան տոմսերը մեկնեց Սոնային:

— Միշտ եմ ասում,— ասաց նա,— վերցրո՛ւ: Միշտ եմ ասում, ընկերս արդեն տեսել է, իսկ ես մյուս անգամ կգնամ:

— Չէ՛,— ասաց Սոնան,— պետք չեն, ես... Ես մեկ է՝ սրա հետ կինո չեմ գնա...

— Ինձ հետ չես գնա՞,— զարմացավ Աբոն:

— Այո՛, քեզ հետ չեմ գնա,— ասաց Սոնան:

— Գուցե այս փսլնքոտի հե՞տ գնաս:

— Այո՛, իր հետ կգնամ...

Աբոն արհամարհանքով ոտից-գլուխ չափեց մեկ տղային, մեկ Սոնային:

— Պա՜հ... գնա՜...

— Քո անունը ի՞նչ է,— հարցրեց Սոնան տղային:

— Աշոտ,— ասաց տղան:— Իսկ քո՞նը...

— Սոնա... Գնա՞նք միասին կինո, ընկերդ, ասում ես, տեսել է:

— Գնանք,— ասաց տղան:

Աբոն շրջվեց ու ջղայնացած հեռացավ, իսկ Սոնան ու Աշոտը մտան կինոթատրոն:

Կինոյից հետո տղան ճանապարհ գցեց Սոնային: Եվ նրանք մինչև տուն՝ զրուցում էին: Տղան պատմեց, որ բոքս է սովորում ո՛չ թե նրա համար, որ սպորտսմեն դառնա, այլ նրա համար, որ խուլիգաններից չվախենա:

Հաջորդ օրը դպրոցում ամեն ինչ այնպես էր, կարծես ոչինչ չէր փոխվել, միայն Սոնան ու Աբոն իրար հետ այլևս ընկերություն չէին անում:

# ԹՌՉՆԱԿԸ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Ի՞նչ է թռչնակը.
Մի փոքրիկ թռչնակ,
Երկու թև ունի և ուրիշ ոչինչ,
Երկու թև ունի և մի ողջ աշխարհ՝
Կյանքի պես իր թանկ
Երկու թևի տակ:

Նա փոքրիկ, փոքրիկ
Իր թևերի տակ
Քաղաքներ ունի, անտառներ կանաչ,
Կտուրներ ունի, լճեր ու դաշտեր.
Ես նախանձում եմ
Թևերին նրա:

Ես նախանձում եմ
Աչքերին նրա,
Որ իր թռիչքից, որ օդից լազուր
Տեսնում է գետեր ու արտեր հասուն
Եվ իջնում թեթև
Թփերի վրա...

Լսում ենք նրան,
Չենք տեսնում հաճախ,
Այնպես անուշ է դայլայլում ծառին,
Թեթևացնելով հոգսը աշխարհի՝
Գեթ փետուրի չափ,
Իր փետուրի չափ...

# ԳԵՏԸ

ՍԱՍՈՒՆ ՍԱՐԱՋՅԱՆ

Վաղ առավոտ էր,
Ու լույսն իր ճերմակ, բաքի մատներով
Ժանյակ էր հյուսում
Կապույտ լճերի հայելիներին
Ու գետի վրա,
Որի ջրերին
Կանաչ մամուռներ են ծույլ-ծույլ լողում,
Բայց երբե՛ք, երբե՛ք
Չեն գնում առաջ:
Ահա գետի մեջ
Փութացող, ճերմակ ձյունե փրփուրներ,
Որ ակունքներից քիչ հեռանալով,
Իսկույն ձուլվում ու անհետանում են,
Կորչում են պղտոր ալիքների մեջ...
Կանգնել էի լուռ
Ջրին կռացած քարափի գլխին:
Նայում էի ցած:
Իսկ ցածում գետն էր աղմկում հուզված
Ու շտապում էր կարծես ժամ առաջ
Դուրս փախչել ձորից
Եվ հարթավայրով հանգի՜ստ ընթանալ...

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

# Վ Ա Ր Դ Ա Վ Ա Ռ

*ՌՈՒԲԵՆ ՄԱՐՈՒԽՅԱՆ*

Արևը թափվում է այն բակի մեջ, որտեղ շատ երեխաներ կան: Այդ բակում կա սովորական մի աղբյուր և մի ավազան, որի մեջ լողանում են տղաներ, աղջիկներ: Նաև մի ծերունի է ապրում այդ բակում, որի դեմքը գրքի թերթերի նման է՝ ծալ-ծալ, տեղ-տեղ մաշված, ու այդ մաշված թերթերի վրա բազում-բազում գաղտնիքներ կան թաքնված: Ծերունին խրտվիլակ է պատրաստել: Խրտվիլակը նման է մարդու, զգեստները հին են ու կեղտոտ: Գլխարկը ներկարարի է՝ բազմագույն ներկերի հետքերով: Աչքերը, քիթն ու բերանը ներկված են ածուխով, նա և՛ լսում է, և՛ տեսնում, և եթե ուզենա՝ կխոսի: Ծերունին խրտվիլակը ման է ածում բակով մեկ, վեր-վեր է թռցնում ու երգում մի երգ, որը հայտնի չէ ումի՞ց է լսել, ե՞րբ է լսել...

-- Վարդավա՜ռ է, վարդավա՜ռ է. ջո՜ւր, ջո՜ւր, ջո՜ւր լցրեք վրաս... — ճչնչում է խրտվիլակը:

Տարեց մարդիկ և կանայք դույլերով ջուր են լցնում նրա վրա, երեխաների վրա, տների, փողոցների վրա, աղջիկների վրա, որոնց աչքերի մեջ պեծպեծում է անսովոր կրակի բոցը:

— Վարդավա՜ռ է:

Աղջկա թրջված զգեստը քանդակել է նրա մարմինն այնպես, ինչպես աստվածուհի էին նկարում հին ժամանակ վանքի խորանների սև պատերին:

Աղջկա վրա դույլով ջուր է լցնում տղան: Աղջիկը ճչում է ճայի պես, թափահարում ճերմակ թևերը ու իր հերթին ջուր նետում պատանու դեմքին, հանգցնելու նրա աչքերի բոցը: Բակով մեկ հնչում է վարդավառի երգը.

— Վարդավա՜ռ է, վարդավա՜ռ է, վարդավա՜ռ է...

Պատշգամբի տակով անցնում է մերկ երեխաների ու թրջված մարդկանց թափորը: Նրանք խրտվիլակը վեր-վեր են թռցնում ու բղավում.

— Ջո՜ւր, ջո՜ւր լցրեք...

Աղջիկը ցնցուղով ջուր է ցանում նրանց վրա:

Դիմացի շենքի պատուհանից լսվեց ջութակի նվագը. աղմուկից պատվեց այն և թևածեց բակում:

Աղջիկը գտավ պատուհանը, որտեղից լսվում էր ջութակի նվագը: Ջութակահարը պատանին է: Ինչ-որ բան էր ուզում ասել աղջկան, բայց չկարողացավ հարմար բառեր գտնել: Դրա համար էլ հիմա նվագում է ոչ թե իր, այլ աղջկա համար, որ նա լսի ու հասկանա, թե ինքն ինչ է ուզում ասել:

Վազում է աղջիկը: Նա դույլը լցրեց ջրով ու ջրեց խաղողի վազը, որ տոչորվում էր: Ոչ ոք, ոչ մի մարդ չէր հոգա վազի այդ ծարավը, եթե չլիներ ջութակի երգը, որն աղջկա սիրտը բարությամբ լցրեց:

Բակում վազում են երեխաները: Նրանց է խառնըվել պառավ մի կին, որի ձեռքերը խորշոմած են: Նա մաղի մեջ լցված վարդի թերթեր է շաղ տալիս բակով մեկ ու հետո էլ երգում մի երգ, որն աղոթքի է նման:

Պատանին խորհրդավոր ու անբացատրելի մի մեծ բան է հայտնագործել իր հոգու մեջ և այն ուզում է դուրս հանել, պոռթկալ: Դողացող ձեռքը նոտաների տետրի վրա գրում է՝ «Վարդավառի երգ»: Հետո աշակերտների պես շարվում են նիշերը, բարակ, երկար տողերի վրա թառում ու ձնվում է Մեղեդին...



Պատշգամբում կանգնած աղջիկը լսում է մեղեդին ու երանությամբ օրորում գլուխը:

Պատանին հիմա չափ է տալիս, ու երգում են քարերը, տները, փողոցները, ու արևի դեղին բոցերի մեջ իրար վրա ջուր են ցայում մարդիկ: Եվ նա ասում է պատշգամբում կանգնած աղջկան.

— Քեզ համար եմ ստեղծել այս...

— Ի՞նչը,— հարցնում է աղջիկը:

— Այս երգը: Քեզ այն դո՞ւր է գալիս:

— Շա՜տ...

...Շենքի շքամուտքից դուրս եկավ պատանին:

Բակն արդեն դատարկ էր: Խաղողի վարի մոտ կանգնած էր աղջիկը: Նա սպասում էր: Պատանին մոտեցավ նրան:

— Բարև՛:

— Բարև՛:

— Դու հասկացա՞ր, որ ես...

— Դո՛ւ ես հորինում:

— Ես... «Վարդավառի երգն» է,— նրան է մեկնում նոտաների տետրը:

— Լավ էր...— աղջիկն շտապում է, անկյունում նրան սպասում են:

Պատանին չհամարձակվեց ձեռքի նոտաների տետրն ու ծաղիկները մեկնել նրան, կանգնած մնաց իր տեղում ու երկար նայեց հեռացող աղջկա ու տղայի ետևից: Հետո մի պառավ անցավ պատանու կողքով՝ համարյա քսվելով նրան:

— Տատի՛կ, տատի՛կ,— բղավեց պատանին: Պառավը կանգնեց:

— Վերցրե՛ք այս թրաշուշանները:

Տատիկը խուլ էր: Չհասկացավ ու բղավեց.

— Գնում եմ մանկապարտեզ:

— Ծաղիկնե՛րը վերցրեք:

— Մի տարի հետո նոր կգնա դպրոց: Պիտի տանեմ, բերեմ՝ մինչև մեծանա:

Պատանին թրաշուշանները խցկեց պառավի ձեռքը: Պառավը ժպտաց: Ա՜յ քեզ ուրախություն: Նրան վաղուց ոչ ոք ծաղիկներ չէր նվիրել: Նա ամաչեց, խոնարհեց գլուխն ու արագ-արագ, քստքստոցով հեռացավ: Պատանու սև-կրակ աչքերն արցունքոտ են: Նա արցունքների միջից տեսավ գզգզված ու թրջված խրտվիլակին, որն ընկած էր աղբի արկղի մոտ: Խրտվիլակը ո՛չ տեսնել կարող էր, ո՛չ լսել, ո՛չ հասկանալ: Նա խրտվիլակ է: Հետո պատանին նայեց նոտաների տետրին: Հստակ, պարզ, գեղեցիկ ձեռագրով գրված էր՝ «Վարդավառի երգ»:

Ինչ-որ տեղից ծնվեց մի մեղեդի ու բախվեց քարերին: Պատանին աստիճաններով բարձրանում էր, բարձրանում ու թվում էր, թե աստիճաններն անվերջ են... Իսկ Վարդավառի մեղեդին հնչում էր ու հնչում:



Նկ. ՌԱՖԱՅԵԼ ԱԹՈՅԱՆԻ



# ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆԸ ԵՎ

Շրջանի տեղանքը մի քիչ Վանաձորին է նման, մի քիչ Արարատյան դաշտավայրին, և այդ երկուսի հատկանիշների համադրությամբ էլ ինքնատիպ է: Անտառը այստեղ մարդու ձեռքով ստեղծածն է, որ դեղձենիների, խնձորենիների, նշենիների, խաղողի այգիների ու այլ մրգատու ծառերի տեսքով ծածկել է բարձրավանդակ ու բլուր, հարթավայր ու սարալանջ: Այդ ամենը տեսնելուց, հրաշք պտուղները համտեսելուց, հազարերանգ ծառերի և թփերի տեսքով հիանալուց հետո, արդեն չես զարմանա, որ Նոյեմբերյանն այսօր տալիս է հանրապետության պտղի 33 տոկոսը: Դա ավելի շատ է, քան ամբողջ Արարատյան դաշտավայրի տվածը և այդ բարիքը անհնար է հավաքել, եթե օգնության չգնան դպրոցականները:

Պակաս հրճվանք և ուրախություն չի և այն, որ շրջանի Բագրատաշեն ավանի Ջեյթունի պետական տնտեսությունն ունի նշենու և ձիթապտղի պլանտացիաներ, մոտ քառորդ հեկտար տարածությամբ ծաղկանոց, որն իր բազմազանությամբ ու անկրկնելի գեղեցկությամբ, իսկապես հեքիաթային է:

Շրջանի բոլոր գյուղերում և ավաններում, խոսելով բերքահավաքի, խոտհնձի, բանջարեղենի մշակման և այլ ու այլ ուշագրավ գործերի մասին, հիշում են նաև դպրոցականներին, որոնք գարնանից մինչև խորը աշուն մասնակցում են բոլոր աշխատանքներին:

Ստորև տպագրում ենք նյութեր, որոնք պատմում են. «Գրնում ենք Լենինի ճանապարհով, Հոկտեմբերի ճանապարհով» երթի տարբեր երթուղիների գծով պիոներ-դպրոցականների ուսանելի գործերի ու նախաձեռնությունների մասին.

## ԹՎԵՐ, ՓԱՍՏԵՐ

Նոյեմբերյանում 4600 պիոներներից 330-ը գերազանցիկներ են, 33 ջոկատի աջթևայինի կոչում է շնորհվել: Դպրոցականների ուժերով ստեղծվել են հայրենագիտական երեք թանգարան: «Փայլակ» ռազմամարտական և թիմուրականների հարյուրից ավելի ջոկատներ են գործում:

Շրջանում ստեղծվել է 28 արտադրական բրիգադ՝ 1250 հիմնական մասնակիցներով, բերքահավաքի եռուն օրերին աշխատողների թիվը հասնում է երեք հազարի: Պիոներ-դըպրոցականների ուժերով կատարվել է մոտ տասը հազար ռուբլու շինարարական աշխատանք, 200 հազար ռուբլու դաշտային աշխատանք, յոթ հազար տոննա պտուղ է հավաքվել, տասը տոննա թղթի թափոն, վեց հազար ծառ ու թուփ է տնկվել:

## ԱՄԱՌԱՅԻՆ

Եթե դու գալու լինես Նոյեմբերյան և հասնես կենտրոնական մայրուղու Ջուջևանի բարձունքին, կապտագույն մի ցուցանակ կտեսնես՝ «Կարմիր գյուղ 27»: Դա նշանակում է, որ եթե ճանապարհդ ծռես ու թեքվես ձախ, գնաս, գնաս, գնաս, դեմ կառնես իրար վրա կուտակված կանաչ սարերի, որը և հենց Կարմիր գյուղն է: Այստեղ են շրջանի Ղալաչա, Կողբ, Նոյեմբերյան, Դոստլու, Ղոշխոթան և այլ գյուղերի ֆերմաներն ու խոտհարքները: Այդ խոտհարքներում գարնանը հապարագույն ծաղիկներ են ծնվում, և կանաչի մեջ ճչում են լոլերը, այդ խոտհարքներում ամառնամուտին կնգում են գերանդիները և լաս-լաս բուրավետ խոտն է փռվում, որպեսզի հետո դեզ առ դեզ բարձրանա ֆերմաների բակերում: Հնձվորներ են գալիս սարերը՝ բարձրահասակ, ամրաթիկունք, և նրանց թևերի համաչափ թափահարումից թրատվում է օդն ու կնգում է հովը: Այդ հնձվորների մոտ մի-երկու օր անց հայտնվում են դպրոցականների խմբերը, որոնք մրջյունի համառությամբ հավաքում, կույտկույտ են անում չորացած խոտը, որպեսզի հետո գան տեղափոխողներն ու տանեն դիզեն ֆերմաների մոտ:

Աշակերտների խմբերը՝ պիոներներ և կոմերիտականներ, խոտհնձի ամբողջ ընթացքում փոխարինում են իրար, և սարերի կատարներին հապճեպորեն պատրաստված քոլիկների առջև, ամբողջ գիշեր կայծկլտում են խարույկների կրակները:

Խոտհարքներում միպայր ճռռում են անհանգիստ ծղրիդները, և դիմացի անտառներում արձագանք է տալիս շներին կանչող հովվի ձայնը: Լուսադեմին շառաչող անտառի վրայով անցնում է առավոտյա

 ՄԵՐ ՀՅՈՒՐՆ ԵՆ ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆՑԻՆԵՐԸ ★

# ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆՑԻՆԵՐԸ

**Ստորև տպագրված հոդվածի հեղինակն է Նոյեմբերյանի № 1 դպրոցի դիրեկտոր, պատմական գիտությունների թեկնածու Սամվել Չիլինգարյանը: Նրա անմիջական ղեկավարությամբ ու ջանքերով է ստեղծվել դպրոցում հայրենագիտական թանգարան, որի մասին նա պատմում է:**



## ԴՊՐՈՑԻ ՀԱՅՐԵՆԱԳԻՏԱԿԱՆ ԹԱՆԳԱՐԱՆԸ

Այս թանգարանը ստեղծվել է պիոներ-դպրոցականների ուժերով և հայտնի է հանրապետության սահմաններից դուրս: Եթե ելնենք «Մի մոռացիր անցյալը, նա ապագայի ուսուցիչն է» հայտնի ասացվածքից, ապա ավելի պարզ կդառնա նման թանգարանների կարևորությունը: Չէ՞ որ ուսումնասիրել, գիտենալ, ճանաչել հայրենի գյուղի, քաղաքի, շրջանի պատմությունը, նրա բնաշխարհին ու մարդկանց, հայրենասիրական գործ է: Կարճ ասած, հայրենասիրությունն էլ սկսվում է հենց հայրենի գյուղից և քաղաքից: Տուրիստական-հայրենագիտական արշավների ժամանակ խմբակի անդամները կատարում էին բնության և հնագիտական հետազոտություններ, հավաքում փաստեր, փաստաթղթեր, նամակներ, նկարներ և այլն: Խմբակի առաջին անդամները համբերատար էին, չէին վախենում դժվարություններից և, որ կարևորն է, սիրում էին գործը: Չնայած նրանցից շատերն այժմ ֆիզիկոսներ, աստղագետներ, իրավաբաններ, մաթեմատիկոսներ, բժիշկներ ու գյուղատնտեսներ են, սակայն այժմ էլ սիրում են հնագիտությունը, հայրենագիտական աշխատանքը և չեն մոռանում դպրոցական այդ տարիները:

Հարուստ են թանգարանի ցուցանմուշները: Թանգարանն ունի ֆիզիկա-աշխարհագրական, հնագիտական, դպրոցի պատմության, ազգագրական, հեղափոխական անցյալի ու Հայրենական պատերազմի բաժինները:

Նախ ստեղծվեց հնագիտական բաժինը: Ավանից մոտ 2 կմ հեռավորության վրա սկսված հիվանդանոցի շենքի հողաշինարարական աշխատանքների ժամանակ բուլդոզերները քանդել էին երկու դամբարան: Նրանցից մեկում 5-րդ դասարանցի Հայկ Հարությունյանը, որն այժմ Բյուրականի աստղադիտարանում է աշխատում, իր ընկերների հետ գտել էր երեքհազարամյա բրոնզե մար-

## ԿՐԱԿՆԵՐ

**վովն ու սրսփում են սառնաշունչ աղբյուրները, օդը դառնում է թափանցիկ՝ կաթնափրփուր նուրբ շղարշի նման:**

**Տղաները վաղ են արթնանում: Հովիկը, Գառնիկը, Սերյոժան, Արտոն, Սուրիկը, Համլետը վազքով ձորն են իջնում, լվացվում, շփվում սառը ջրով ու կրկին վազքով վեր ելնում, որպեսզի շարունակեն իրենց օրվա հերթափը:**

**Ամառվա մի օր գնացի նրանց մոտ, կրուցեցի դպրոցականների հետ, բարեկամացա: Մենք խոսում էինք դաս ու դպրոցից, աշխատանքից: Ինձ շրջապատած պատանիների աչքերը վառվում էին բերկրանքից և այն գիտակցությունից, որ սեփական աշխատանքով հպարտ են անսահման:**

**Իր պատիկների մասին ինչպիսի խանդավառությամբ էր արտահայտվում Ղալաչայի աշակերտական-արտադրական բրիգադի ղեկավար Կարլեն Զուրաբյանը: Նոյեմբերյանի շրջկենտրոնի №1 դպրոցի ուսմասվար Գառնիկ Գիշյանն ու աշակերտական-արտադրական բրիգադի ղեկավար Հրաչիկ Գիշյանն անպայման կամենում էին, որ ես գրի առնեմ բոլոր դպրոցականների անունները: Կողբի դպրոցի ֆիզկուլտուրայի տարեց ուսուցիչ Սեդրակ Սահակյանը հավատացնում էր, որ եթե երեխաների հետ ինքն ամառները սարերը չգնա, իր կյանքը արագությամբ կգլորվի դեպի ծերություն: Իրենց փոքրիկների մասին ջերմությամբ էին խոսում Շավարշավանի դպրոցի աշակերտական-արտադրական բրիգադի ղեկավար Սերյոժա Վերանյանը, Դոսալուի և Ղոշխոթանի դպրոցների դիրեկտորներ Լեոն Հարաթյունն ու Երվանդ Սաֆար-**



*Ջնում (խնոցի)*
*մ. թ. ա. II հազարամյակ*

տական կացին, մանգաղ, դաշույն և կարդեր: Այնուհետև Փոքրիկ հնագետները սկսեցին պեղել և փրկել այն դամբարանները, որոնք ավերվում էին անփույթ շինարարների կողմից: Հաջորդ տարիներին խմբակը գիտությունների ակադեմիայի հնագիտության և ազգագրության ինստիտուտից իրավունք ստացավ ինքնուրույն պեղումներ կատարելու, որի շնորհիվ հարստացավ թանգարանի հնագիտական բաժինը: Այնտեղ հիմա կգտնեք օբսիդիանից և կայծքարից պատրաստված քարե գործիքներ, որոնք տասնյակ հազարամյակների պատմություն ունեն, մետաղամշակության և հանքամշակության հինգհազարամյա գործիքներ՝ սանդեր, սանդաթակեր և կաղապարներ: Պատանի հետազոտողները գտան շուրջ 40 կիկլոպյան հնագույն կառույցներ, բնակավայրեր, հանքամշակության օջախներ, որոնք ապացուցում են, որ Նոյեմբերյանի շրջանի տարածքում ապրող բնիկները դեռ հինգ հազար տարի առաջ մետաղ են ձուլել: Ուշագրավ են թանգարանի բրոնզե պենքերը. մարտական կացիններ, մանգաղներ, դաշույններ, նիզակներ, նետասլաքներ, վահանակներ, իսկ կարդերից՝ ուլունքներ, ապարանջաններ, ականջօղեր, մազակալներ, կրծքազարդեր, մատանիներ, և այլն: Թանգարանի նյութական արժեքները շատ բան են պատմում հայ ժողովրդի ձևավորման և նրա նյութական մշակույթի ու կքաղմունքի մասին: Այս ձմռանը շինարարության ժամանակ հայտնաբերվեց մի նոր դամբարանադաշտ, որը վերաբերում է վաղ հայկական դաբաշրջանին և ունի շուրջ 2500 տարվա պատմություն: Պեղումներին մասնակցում էին Արմենը, Դարչիկը, Աշոտը, Հովիկը և ուրիշներ:

Թանգարանի ֆիզիկա-աշխարհագրական տեղեկությունների բաժնից շատ բան կարելի է իմանալ. հանված են շրջանի ֆիզիկական, վարչատնտեսական, հընագիտական քարտեզները, հավաքված են կոլեկցիաներ շրջանի հանքատեսակներից, ի մի են բերված տեղեկություններ շրջանի բնության և կենդանական աշխարհի, թռչնատեսակների, աճող ծառատեսակների, պտղատեսակների, վայրի մրգատեսակների ու դեղաբույսերի մասին:

Այստեղ կան երկրագործական, արհեստավորական, կենցաղային բազմաթիվ այլ իրեր, որոնք «մեռել են» կամ գտնվում են այդ ճանապարհին: Թանգարանում ուշագրավ են երկու հակադիր ցուցափեղկեր. Նոյեմբերյանի հին ավանը՝ խարխուլ ու հին խրճիթներով և նորը՝ իր բարեկարգ ու գեղեցիկ շենքերով և փողոցներով: Առանց հպարտության չես հեռանա թանգարանի՝ շրջանի հեղափոխական անցյալը ներկայացնող բաժնից, ուր կան խունացած լուսանկարներ և տեղեկություններ, փաստեր այն մարդկանց մասին, որոնք կըռյանը, բոլոր նրանք, ովքեր երեխաների հետ գնում են աշխատանքային տեղամասեր:

Շրջանի պիոներներն ու դպրոցականները ոչ միայն խոտհավաքին են մասնակցում, այլև միրգը հասունանալուն պես, գնում են այգիները՝ դեղձ ու սալոր, խնձոր ու խաղող հավաքելու:

Այգիներում ծայր է առնում ավագներին հասնելու համառ մրցությունը: Ամեն երեկո կոմերիտմիության շրջանային կոմիտեի դպրոցական բաժնում ստացվում են թարմ տվյալներ. շրջկենտրոնի № 2 դպրոցի աշակերտները ուսուցիչ Աշոտ Ամիրաղյանի գլխավորությամբ մի օրվա ընթացքում տնտեսության Գոգվելիի տեղամասի այգիներից հավաքել են 10 տոննա միրգ: Հաջորդ օրը №1 դպրոցն առաջ է անցնում նրանցից՝ 14 տոննա, իսկ Բագրատաշեն ավանի պիոներ-դպրոցականները դառնում են ռեկորդակիրներ՝ 17 տոննա: Ուսուցիչներ Բիյալ Անսարովը, Ռոլանդ Ասատըրյանը, Համբարձում Հակոբյանը դժվարանում են առանձնացնել լավագույններին. բոլորն էլ աշխատանքի գերազանցիկներ են, լավեր և լավագույններ, և բարձր գնահատականներով են հանձնում աշխատանքային՝ հինգերորդ քառորդը:



Հետո ձմեռային այգում լռություն է տիրում: Ծառերը տերևաթափ են լինում ու վախկոտ նապաստակները համարձակ շրջում են դատարկ այգիներում: Լռում են նաև Կարմիր գյուղի սարերը: Այստեղ հաստ շերտով նստում է ձյունը, որի երեսին բարդ ժանյակների նման պիզգազվում են ձմեռակյաց գազանիկների փախչող հետքերը: Օդի մեջ սառը շունչ է մնում, ու էլ չի շառաչում մրսող անտառը:

Սակայն գարնան հետ վերստին շաչ ու շռինդով է լցվում այս գողտրիկ լեռնաշխարհն ու կրկին երկնամերձ սարերի գագաթներին մինչև լույս բոցկլտում են ամառային կրակների ցոլքերը:

*ՏԱՆՅԱ ԹԱՆԴԻԼՅԱՆ*


ՄԵՐ ՀՅՈՒՐՆ ԵՆ ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆՑԻՆԵՐԸ ★

վել, մարտնչել են հին աշխարհը կործանելու և նորը ստեղծելու համար:

Թանգարանի «Նոյեմբերյանցիների մասնակցությունը Հայրենական մեծ պատերազմին» բաժինը բաղկացած է ութ ցուցափեղկերից և մի քանի ալբոմներից: Խունացած լուսանկարները, ռազմաճակատից թիկունք գրած հուզիչ նամակները, ճակատային թերթերից բերված քաղվածքները պատմում են մեր հայրենակիցների մասին, որոնք սխրագործություններ են կատարել տարբեր ռազմաճակատներում: Շատ բան կարելի է իմանալ Սովետական Միության հերոսներ Ջահան Կարախանյանի և Իշխան Սարիբեկյանի, ինչպես նաև Հունան Ավետիսյանի մարտական ընկերոջ՝ շարքային Հայկազ Սաֆարյանի, գեներալ Նվեր Սաֆարյանի և շատ ուրիշների մասին: Ամեն մի խունացած նկար ունի իր հուզիչ պատմությունը: Անկարելի է ուշադրությունից վրիպել ցուցափեղկերից մեկում տեղադրված մի լուսանկար: Հայր ու որդի Շաքար և Ավետիք Աստրյանները միասին նկարվել են 1943 թ. ռազմաճակատում: Նկարի հակառակ կողմում հոր մակագրությունն է՝ «Ընկեր փոստատար, հեր ու տղա նկարվել ենք ֆրոնտում, խնդրում ենք մեր ընտանիքին հասցնեք»: Տղան մենակ վերադարձավ, հայրը՝ Շաքարը զոհվեց Լեհաստանում:

Նամակներից, նկարներից, տըպագիր ճակատային թերթերից բերված քաղվածքներից ձևավորվել են ալբոմներ, որոնք պետք են գալիս պատմության դասավանդման համար:



Արծաթյա դրամներ
մ. թ. ա. 123—31 թթ.

# Թ Ի Մ Ո Ւ Ր Ա Կ Ա Ն Ն Ե Ր Ը

## Բռնվեցին «հանցանքի» մեջ

Ինչպես բոլոր ավաններում, գյուղերում ու քաղաքներում, այնպես էլ Նոյեմբերյանի շրջկենտրոնում միայնակ տատիկներ ու պապիկներ կան, երեք-չորս փոքրահասակ երեխաներ ունեցող այրիներ, օգնության կարիք ունեցող այլ մարդիկ: Մի տեսակ անհարմար է հատուկ հավաքվել, խորհրդակցել, հետո էլ զգուշացնել այսինչ տատիկին կամ պապիկին, թե այսպես, այսպես՝ մեր ջոկատը վերցրել է ձեր շեֆությունը, գալու ենք օգնելու:

Պատահում է, որ գնում են օգնելու և պարզվում է, որ այդ տատիկ-պապիկը օգնության կարիք չունեն կամ տանը չեն: Պիոներները կարճ խորհրդակցելուց հետո մեկ ուրիշ դուռ են թակում: Գործ եղավ, կանեն, չեղավ՝ դպրոց կվերադառնան կամ իրենց տները կգնան:

Նոյեմբերյանցի պիոներներից շատերը վաղուց են հրաժարվել նման եղանակով օգնության գընալուց: Մի օր 7-րդ դասարանցի աղջիկներից մեկը, որ վաղ հասակում զրկվել էր հորից, դասարան եկավ և պատմեց, որ հետաքրքիր բան է կատարվել իրենց այգում: Ինչ-որ անծանոթ մարդիկ գիշերը գաղտնի փորել, մշակել են հողամասը և, առանց որևէ բան ասելու, հեռացել: Դասարանում մյուսներն էլ պատմեցին, որ նման բան է պատահել նաև իրենց հարևան Հոռոմսիմ բաբոյի, բուժքույր Սեդայի և օգնության կարոտ այլ մարդկանց հողամասերի ու այգիների հետ: Այսպես անցավ գարունը, սկսվեցին ամռան աշխատանքները, և խորհրդավոր օգնողների մասին ավանի տարբեր ծայրերում սկսեցին խոսել, բայց չկարողացան գտնել կամ «հանցանքի» վայրում բռնել բարեգործներին:

Իսկ այդ ընթացքում ավանի պատանի թիմուրականների բանակը մեծացել, նոր անդամներով էր համալրվել: Եվ, ահա, աշնանը, պատահեց այնպես, որ մի գիշերում պիոներ թիմուրականները չհասցրին մշակել Հոռոմսիմ բաբոյի հողամասը: Բաբոն հաջորդ գիշեր նորից սովորականի նման բոլոր լույսերը հանգցրել, բայց քնելու փոխարեն, պատուհանից գաղտնի նայում էր այգուն: Երբ փողոցներում մարեցին բոլոր ոտնաձայները, տղաները բանջարանոց մտան ու սկսեցին աշխատել:

Աշխատանքի եռուն պահին անսպասելի վառվեց բակի լույսը: Պատանիները շփոթված իրար նայեցին: Իսկ բաբոն խորամանկ ժպտալով մոտեցավ Արարատին, Սերգեյին, Վոլոդյային.

— Ա՜... վերջապես բռնվեցիք:

Հիմա ավանում ու գյուղերում նորից անսպասելի մեկի բերքն է հավաքվում, մյուսի կարտոֆիլն ու բողկը, ձմռան վառելափայտը տեղափոխվում, բայց արդեն բոլորը գիտեն, որ դա պատանի թիմուրականների գործն է և որտեղ հայտնըվում են նրանք՝ միայն բարի հետք են թողնում:

## Անհայտ զինվորի գերեզմանը Բագրատաշենում

1942 թվական, ձմեռ: Սովետական բանակը արյունալի մարտեր էր մղում մինչև ատամները զինված ֆաշիստների դեմ: Կովկասում դեռ չէին լսվել ռումբերի պայթյունը, իսկ Հայաստանում արկերի հեռավոր արձագանքներն իսկ չէին հասնում, բայց Նոյեմբերյանի շրջանով պատերազմ էին գնում զինվորական շարասյուները: Ամեն ինչ կայծակնային արագություն էր պահանջում, և շարասյուներից մեկի հետ վթար է պատահում: Զոհվում են երեք զինվոր:

Բագրատաշենի բնակիչները հողին են հանձնում զոհվածներին: Եվ միայն հետո է պարզվում, որ չեն վերցրել զոհվածների հասցեները: Պատերազմը ավարտվելուն պես սկսում են նամակներ գրել տարբեր դպրոցների ու բնակավայրերի հասցեներով: Շրջանավարտները փոխարինում են իրար ու համառորեն շարունակում են որոնումները: Ճշտում են գնդի համարը, մարտական ուղին և մոտ տասնհինգ տարի անց գտնում զինվորներից երկուսի հարազատներին, որոնք գալիս, նրանց աճյունը տանում թաղում են իրենց ծննդավայրում:

Հիմա Բագրատաշենում մի անհայտ զինվորի գերեզման կա, և վեցերորդ դասարանցիներ Արեվիկը, Կարենը, Զարուհին, Ժորան, մյուսները խնամում են անհայտ զինվորի գերեզմանը. գարնանը նրանք ծաղիկներ են ցանում, աճեցնում, իսկ աշնանը մաքրում են չոր ցողուններից, փխրեցնում հողը, որ հաջորդ տարի նորից նույնը կրկնեն:



*Բագրատաշենի թիմուրականները անհայտ զինվորի գերեզմանը խնամելիս*

Պատանի՛ բարեկամ, եթե ճամփորդելու կամ էքսկուրսիայի ժամանակ, Հայաստանի սահմաններից դուրս մեկը հարցնի, թե իրենց հարազատը Հայաստանում է թաղված, բայց չգիտեն գերեզմանի տեղը, պատմիր նրան Բագրատաշենում թաղված անհայտ ռուս զինվորի մասին: Գուցե հենց նա է հարցնողի հայրը, պապիկը կամ հարազատը:

ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ

# «ՊԻՈՆԵՐ»-Ի ՈՒՇԱԴԻՐ ԸՆԹԵՐՑՈՂԸ



ՎԱՐԴԱՆ ՄԱՄՅԱՆ

«Պիոներ» ամսագրում կարդացի, որ մեր դպրոցի 9-րդ դասարանի աշակերտ Վարդան Մամյանը արժանացել է ամսագրի «Ուշադիր ընթերցողի» մրցանակի: Հպարտացա, բայց չզարմացա, որովհետև Վարդանը ոչ միայն ընթերցասեր է, այլև հետաքրքրվում է ամեն ինչով: Գրադարանի վարիչ ընկ. Ռուզան պատմում է, որ դեռևս 4-րդ դասարանից Վարդանը «իր հոգին հանում էր» ամեն օր գիրք փոխելով: Ոչինչ չէր վրիպում Վարդանի աչքից և դասաժամերին վիճելի ու դժվարին հարցերին ամենալավ պատասխանը նա էր տալիս:

Շատ աշակերտներ գերազանցիկ են դառնում ոչ միայն իրենց ուժերով, այլև մայրիկների և հայրիկների ամենօրյա օգնությամբ ու հսկողությամբ: Սակայն այդպիսին չէին Մամյան ընտանիքի երեխաները, որոնք զարմացնում էին իրենց ինքնուրույնությամբ, կուռ մտածողությամբ ու աշխատասիրությամբ, ինքնազարգացմամբ, մի բան, որ ամենակարևորն է աշակերտի համար: Այդպիսին էին մեր դպրոցի նախկին սաները՝ Վարդանի քույրը՝ Ալիսան, որն այժմ պոլիտեխնիկական ինստիտուտի լավագույն ուսանողուհիներից է, եղբայրը՝ Սերգեյը, որը դպրոցն ավարտել է ոսկե մեդալով, իսկ պոլիտեխնիկական ինստիտուտը՝ առաջին կարգի դիպլոմով և հիմա նույն ինստիտուտում դասախոս է: Նա մի քանի ամիս առաջ Մոսկվայում պաշտպանեց դիսերտացիա և ստացավ գիտական աստիճան: Ճիշտ է, ընդունակ են նրանք, սակայն գերազանց ուսման և բարձր առաջա-

★ ՄԵՐ ՀՅՈՒՐՆ ԵՆ ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆՑԻՆԵՐԸ ★ ՄԵՐ ՀՅՈՒՐՆ ԵՆ ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆՑԻՆԵՐԸ ★

դիմության էին հասնում աշխատասիրությամբ: Ոչ մեկը Վարդանին չէր ստիպում դասերը պատրաստել, ինչպես անում են շատ ընտանիքներում: Վարդանի հայրը արդեն 40 տարի հովիվ է և տարվա մեծ մասը տանը չի լինում: Մայրը ստիպված օգնում է հորը և նույնպես բացակայում է տնից:

Հիշում եմ. ավանից 60 կմ հեռավորության վրա, պատանի տուրիստների մեր ջոկատը յայլաներում, մի քարայրի մեջ հանդիպեց Վարդանին: Անձրև էր, ոչխարները հանգիստ արածում էին, իսկ Վարդանը հափշտակված կարդում էր Վախթանգ Անանյանի «Որսորդական պատմվածքները»: Նրա ուսից կախված հացամանում կար նաև «Հետաքրքրաշարժ ֆիզիկա» վերնագրով մի գիրք: Գեղարվեստական գրքերից կատ, նա կարդում էր նաև տարբեր մասնագիտությունների վերաբերյալ գրքեր և ամսագրեր: Ճիշտ է, բոլոր առարկաները հավասարաչափ չէր սիրում, բայց լավ էր պատրաստում և ուսումնառության բոլոր տարիները փակում էր գովասանագրով: Վարդանը մշտապես մասնակցում էր մաթեմատիկայի, ֆիզիկայի և քիմիայի շրջանային ու հանրապետական օլիմպիադաներին և դիպլոմների արժանանում:

Անցած ամռանը Վարդանը փայլուն գնահատականներով ավարտեց 10-րդ դասարանը: Մինչև ընդունելության քննությունների մեկնելը, ընկերների հետ որոշեցին օգնել պետական տնտեսությանը, մասնակցել բերքահավաքին: Նա իր դասընկերների հետ մտավ պատանի հնձվորների օղակ: Նրանք այնպիսի թեքությունների վրա էին աշխատում, ուր հնձող մեքենա չէր կարող մտնել: Վարդանը փոքրամարմին է, բայց ջլապինդ է ու մարզված: Պարզվեց, որ նաև քնտիր հնձվոր է:

Շուտով սկսվեցին ընդունելության քննությունները, Վարդանը գործերը հանձնեց բժշկական ինստիտուտի նոր բացված ֆակուլտետի՝ բժշկական կիբեռնետիկայի բաժին: Բոլոր քննությունները գերազանց հանձնեց և իր փայլուն գիտելիքների համար նրան ուսանելու վերցրին Մոսկվայի Լոմոնոսովի անվան համալսարանում:

Դպրոցը հպարտանում է իր այդպիսի սաներով: Նրանք ոչ միայն դպրոցի պատիվն են բարձրացնում, այլև շրջանի ու հանրապետության, իրենց ժողովրդի:

# ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆՑԻ ՆԱԶԱՆԸ

*Դպրոցի բակում խաղալու ժամանակ Նազանի թոռը վայր ընկավ, մատը կոտրվեց: Ընկերուհու ուղեկցությամբ երեխան լալով տուն եկավ:*

*— Վա՜յ, քոռանա՜մ ես... Վա՜յ, քոռանա՜մ ես,— ծնկին խփեց, հառաչեց Նազանը,— ի՞նչ անեմ, ո՞նց անեմ, գոնե երկու մատը կոտրվեր... Մի մատի համար ամոթ չի՞, քեզ առնեմ բժշկի տանեմ:*

❋ ❋ ❋

*Նազանենց խոզերը հարևանի այգին էին մտել, մեծ վնաս պատճառել: Հարևանուհին վրդովված ու կռվարար տոնով Նազանին դուրս կանչեց.*

*— Խնդրում եմ՝ վաղը գաս,— պատասխանեց Նազանը,— գլուխս առավոտից ցավում է, չեմ կարող այսօր կռվել:*

❋ ❋ ❋

*Նազանը շատ է սիրում երեխաներին խրատներ ու խորհուրդներ տալ, որոնք միշտ վերջացնում է նույն խոսքերով, հառաչելով ասում է.*

*— Է՜հ, երեխե՜ք ջան, մեծանալը վատ բան է, ես մեծացել եմ, դուք ոչ մեծանաք...*

❋ ❋ ❋

*Նազանը ոչ մի կերպ չէր թողնում, որ ամուսինը նոր կոշիկները հագնի: Մի օր էլ, երբ ինքը տանը չէր, ամուսինը հագավ: Բայց տնից դուրս գալիս, Նազանը վրա հասավ:*

*— Քեզ չասի՞, չհագնես,— հանդիմանեց ամուսնուն:*

*— Բա բոբիկ էի, ի՞նչ անեի,— արդարացավ ամուսինը:*

*— Դե, գնա՛, ջուր մի՛ կուլգ էլ գնիր:*

*— Ինչո՞ւ ես շտապում:*

*— Չշտապեմ, ի՞նչ անեմ... Արդեն տարիքդ առած մարդ ես, հանկարծ ու գիշերը մահացար, հո հին կոշիկներով չե՞նք թաղելու...*

❋ ❋ ❋

*Նազանի աղջիկը մի պարկ նուշ էր բերել: Նազանը կարծեց ընկույզ է, լցրեց խոզերի առաջը:*

*— Այս ի՞նչ ես անում, ա՛յ մեր,— աղջիկը վեր թռավ, սկսեց խոզերին քշել:*

*— Ի՞նչ եմ անում,— փնթփնթաց Նազանը:*

*— Նուշն ինչո՞ւ ես խոզերի առաջը լցնում:*

*— Վա՜յ, քոռանա՜մ, ուրեմն նուշը սա է՞...*

*— Միշտ ասում էիր՝ իմ հայրը Քոռ ափից նուշ էր բերում, երբ փոքր էինք, ինչո՞ւ հիմա չտարբերեցիր նուշն ու կորիզը:*

*— Նոր եմ հիշում՝ իմ հոր բերածը նուշ չէր, փշատ էր...*

*ԱՇԽԵՆ ԱԲԱՋՅԱՆ*

★ ՄԵՐ ՀՅՈՒՐՆ ԵՆ ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆՑՒՆԵՐԸ ★ ՄԵՐ ՀՅՈՒՐՆ ԵՆ ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆՑՒՆԵՐԸ ★





# ԱՅՍ ԱՄԱՌԸ

ԳՈՒՐԳԵՆ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

Այս ամառը,
Այս ամառը,
Հապա տեսեք,
Ի՞նչ համառ է:
Նա փորձում է
Խանձել արտը,
Բայց չգիտե,
Որ քնած չէ
Հնձվոր մարդը:
Այս ամառը՝
Այս համառը

Այս ամառը,
Այս ամառը
Տոթ է բերում
Ու քաղաքի
Վրա փռում:

Փորձում է և
Նեղել վազին,
Բայց չգիտե
Մեր ամբարած
Ջրի մասին:

Բայց կան լեռներ
Վազող ճամփա,
Ճամփավերջին
Զրնգացող
Կանաչ ճամբար:
Ու ճամբարում
Հազար բարիք
Մանկանց համար...
Եվ լեռների
զովությունից...
Նեղվող ամառ:

Նկ. ՎԱՆ ՀՈՎՆԱՆՅԱՆԻ

ԹԵՎԱՎՈՐ ԽՈՍՔԵՐ

## ՕԼԻՄՊԻԱԿԱՆ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ

Հին հունական աստվածների օթևանը համարվում էր Օլիմպոս լեռը, որ վեր է խոյանում այժմյան Սալոնիկի ծովածոցից 2917 մետր բարձրությամբ: Նրա գագաթը գրեթե մշտապես պատած է ամպերով, հենց այդ պատճառով է, որ նրա բարձունքները հելլենների երևակայության մեջ դարձել են երկնաբնակների օթևան:

Ահա թե ինչու հունական աստվածները ստացել են «օլիմպիացիներ»՝ Օլիմպոսի բնակիչներ կոչումը, իսկ նրանց հատուկ վեհությունն ու խաղաղությունը կոչվել օլիմպիական: Ծուտով այս բառը ձեռք է բերում գերադրական աստիճանի նշանակություն. այս իմաստով էլ գործածում ենք հիմա: «Օլիմպիական խաղաղություն» արտահայտությունը մեզ համար նշանակում է անվրդով, առավելագույն խաղաղություն, ինչպես հին աստվածների մոտ:

Սակայն, հարկ է իմանալ, որ «օլիմպիական խաղեր», «օլիմպիադա» բառերը անուղղակի կապ ունեն «Օլիմպոս» բառի հետ, դրանք ծագել են Ալփեոս գետի ափին գտնվող Օլիմպիա փոքրիկ քաղաքի անունից, ուր հույներն անց էին կացնում իրենց սրբազան մրցումները, որոնք կոչվում էին «Օլիմպիական խաղեր»:

## ՍՈՂՈՄՈՆԻ ՎՃԻՌԸ

Հին Հրեաստանի արքա Սողոմոնը, Դավթի որդին, լեգենդների մեջ ներկայանում է իբրև իմաստության ու խորամտության տիպար: Շատ պատմություններ են պահպանվել






# Ա՛Յ ՔԵԶ, ՊՍՏԻ՛Կ

Ն. ԿՈԼՊԱԿՈՎ

Արագաշարժ և ճարպիկ շնաձուկը մարդուն ամենևին էլ բնության տերը չի համարում և ամեն հարմար առիթով հարձակվում է նրա վրա, հազվադեպ հանդիպելով անհաջողության: Ահա թե ինչու մարդիկ շատ վաղուց նրանից պաշտպանվելու հուսալի միջոցներ են որոնում, սակայն, ավա՜ղ, ապարդյուն: Վերջերս գիտական ամսագրերում հետաքրքիր հաղորդում տպագրվեց: Պարզվում է, որ Կարմիր ծովում, որտեղ շնաձկներ են վխտում, ապրում է տափակաձկան նմանվող մի փոքրիկ ձկնիկ՝ պարտախիրուս մարմորատուս անունով: Նա շնաձկից ամենևին չի վախենում: Ձկնիկը աքերին կոչվող ձկան պես ծակող ասեղներ չունի, ոչ էլ ամուր կրահ, սակայն շնաձուկը նրան ոչինչ անել չի կարող: Եվ ահա թե ինչու. երբ ձկնիկը հանդիպում է շնաձկանը և նա ուզում է սրան կուլ տալ, գիշատչի համարյա երախի մեջ սա թույն է բաց թողնում, որից ակնթարթորեն, վայրկյանից էլ ավելի քիչ ժամանակում, կաթվածահար են լինում շնաձկան ծնոտները, այնպես որ նրա բացված երախը բաց էլ մնում է:

Հրաշք ձկնիկն իր վրա հրավիրեց շնաձկներին ուսումնասիրող կենսաբանների ուշադրությունը: Որսված կենդանի ձկնիկներին զգուշորեն կապում էին երկար ուռկաններին և ծովն էին գցում: Հետո հետևում էին, թե ինչպես են շնաձկները սլանում դեպի այս ձկնիկները, որ սրանց կուլ տան:

Բայց իզո՛ւր: Ձկնիկները գիշատչի ճիշտ երախի մեջ կաթնասպիտակավուն թույն էին ժայթքում, որից տեղնուտեղը կաթվածահար էին լինում շատակեր թշնամու ծնոտները: Ապշած շնաձկները բաց երախով փախչում էին: Որոշ ժամանակ անց թույնի ազդեցությունը՝ անցնում էր, շնաձկները նորից էին փորձում կուլ տալ որսը, բայց ամեն անգամ թույնը գործում էր ապշեցուցիչ արագությամբ: Ձկնիկներով խայծավորված ուռկանը մի անգամ նույնիսկ տասնութ երկար ժամ դիմացավ երկու շնաձկան հարձակումներին:

Գիտնականների կարծիքով, այդ թույնը գրեթե չի ազդում մարդու վրա: Եթե մարդը այն փորձի միայն լեզվի ծայրով, մի փոքրիկ դողոց կզգա, ինչպես գրպանի լապտերի մարտկոցների կոնտակտներին դիպչելիս:

Գիտնականներն այժմ զբաղված են թույնի քիմիական կազմի ուսումնասիրությամբ, և եթե հաջողվի այն սինթեզել արհեստական ճանապարհով, ապա մեկ մոտ ապագայում մենք շնաձկների դեմ պայքարի հուսալի միջոց կունենանք, որով կարող ենք զինել դեպի ծովի հեռուները լողալ սիրող յուրաքանչյուր լողորդի:

*Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ*



---

հատկապես դատական դժվարին գործերի նրա զարմանալի վճիռների մասին:

Ասում են, մի անգամ երկու կին վիճում էին, թե ում է պատկանում երեխան: Սողոմոնն առաջարկում է երեխային երկու կես անել և բաժանել համաձայնության չեկողների միջև:

Խաբեբա կինը հանույքով համաձայնում է, իսկ մայրը լալիս է և ասում. «Ավելի լավ է նրան տվեք, միայն թե երեխան կենդանի մնա»: Իսկությունը պարզվում է անհապաղ:

Սողոմոնի դատ՝ նշանակում է արդար, իմաստուն դատ: Սողոմոնի վճիռ՝ սրամիտ, դժվարին վիճակից հնարամտորեն դուրս գալու վճիռը:



## ՓՇԵ ՊՍԱԿ

Հին-հին դարերում պատահում էր, որ նման պսակներ, իբրև ծաղր, դնում էին հանցագործների, մահվան դատապարտվածների գլխին, մինչդեռ հաղթողներին զարդարում էին դափնեպսակներով:

Նկարիչները Քրիստոսին բազմիցս նկարել են փշե պսակով, որը և դարձավ տառապանքի, տանջանքներն անտրտունջ տանելու խորհրդանշան:

# ԿԱՅԾԱԿԸ՝ ՀԵՏԱԽՈՒՅԶ

Մեր մոլորակի մթնոլորտում ամեն վայրկյան տեղի են ունենում էլեկտրական լիցքի բազմաթիվ պարպումներ: Յուրաքանչյուր բռնկումից օդային օվկիանոսի մի ծայրից մյուսն են անցնում էլեկտրամագնիսական ալիքներ: Դրանք հասնում են անտենաներին, և ռադիոընդունիչների դինամիկների մեջ ճայթյուն է լսվում: Կայծակը ռադիոխանգարման աղբյուր է: Մոսկվացին ռադիոյով լսում է այն ճայթյունը, որն արձակվում է Մադագասկարում: Կայծակը բաց է թողնում չափազանց լայն դիապազոնի էլեկտրամագնիսական ալիքներ՝ վայրկյանում հարյուրից մինչև միլիոն տատանումներով:

Կրասնոյարսկցի ինժեներ Գ. Իգնատևը առաջարկել է կայծակ-ռադիոհաղորդիչից օգտվելու մի ինքնատիպ միջոց: Այդ գյուտի հիմքում ընկած է իրարից բավականին հեռու գիտությունների՝ երկրաբանության և մթնոլորտային էլեկտրագիտության համագործակցության գաղափարը:

Ֆիզիկան երկրաբանությանը սովորեցրել է նայել երկրի ընդերքը: Ստեղծված են սարքեր, որոնք հեռվից-հեռու նրբորեն «զգում են», թե հողի տվյալ շերտում ինչ ապարներ կան: Երկրային, «հետևակ» միջոցներով հանքավայրի չափսերը որոշելու համար պահանջվում է 10—12 տարի: Աերոլոգիական միջոցներով հետախուզումը կարող է տևել 2—3 տարի:

Ռադիոալիքների գեներատորը և ընդունիչը դրվում են երկու, իրարից որոշակի հեռավորությամբ թռչող ինքնաթիռներից մեկի վրա: Երկիրը վերից «շոշափում են» ռադիոալիքներով, և ընդունիչ անտենաները որսում են դրանց էլեկտրամագնիսական արձագանքները: Ընդերքի հետախույզը որքան ավելի վերև է բարձրանում, այնքան ընդլայնվում է հետախուզության տարածքը, այնքան ավելի արագ է որոշում հանքավայրի չափսերը, բայց նույնքան ավելի թույլ է լինում արձագանքվող ալիքի ազդանշանը: Բավարար հավաստիությամբ ընկալելու համար պետք է ավելի ուժեղ ազդանշան ուղարկել: Իսկ որքան մեծ լինի գեներատորի հզորությունը, այնքան նա ավելի ծանր կլինի, մինչդեռ ավիացիայի հնարավորությունները անսահմանափակ չեն: Լավ կլիներ չվերցնել հաղորդիչը, բավարարվել միայն ընդունիչով: Գեներատորը տեղավորել գետնի վրա, իսկ դրանից մինչև հետազոտվող հատվածի ծայրը փռել երկար կաբել: Հաղորդիչը՝ ներքևում, ընդունիչը՝ վերևում: Հնարավորության դեպքում այդպես էլ արվում է: Սակայն միշտ չէ, որ դա հաջողվում է, լեռներում կամ ճահիճներում կաբել փռելը հեշտ չէ: Բացի դա, ավիահետախուզության առավելությունը՝ արագությունը, շարժունակությունը այս դեպքում համարյա վերանում է:

— Իդեալական կլինի,— դատում է Իգնատևը,— որ ռադիոալիքների գեներատորը գտնվի օդում, բայց ոչ ինքնաթիռի մեջ:

Թե ինչի հանգեցին այդ խորհրդածությունները, դա դժվար չէ կռահել: Պետք է օգտագործել կայծակը: Եվ ընդունվեց նրա առաջարկը որպես հիմնավորված գյուտարարություն:

Կայծակը՝ էլեկտրամագնիսական ալիքների այդ բնածին գեներատորը, աշխատում է համարյա անընդմեջ: Մեկը մյուսի ետևից, աշխարհի տարբեր կողմերից ալիքներ են գալիս: Եվ հայտնի է, որ ռադիոալիքները միևնույն չափով չեն ընկալվում միջավայրի կողմից, հետևապես նաև՝ լեռնային ապարների կողմից: Որքան ապարի էլեկտրահաղորդականությունը ցածր է, այնքան ավելի «թափանցիկ» է էլեկտրամագնիսական ճառագայթման առումով: Որքան ավելի մեծ է ռադիոալիքը, այնքան ավելի խորն է թափանցում Երկրի ընդերքը:

Մթնոլորտի այդ զարհուրելի էլեկտրալիցքը հենց նրանով է օգտակար գեոֆիզիկական հետախուզությանը, որ բաց է թողնում լայն դիապազոնի ռադիոալիքներ:

*Թարգմ. Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ*

# ՕՎԿԻԱՆՈՍԱՅԻՆ ԱՆԱՊԱՏ

*Ն. ՍԼԱԴԿՈՎ*

Օվկիանոսի ջուրը կանաչավուն է: Կարող ես ամիսներով նավարկել և շուրջդ շարունակ տեսնել լեռնացող կանաչ ալիքներ կամ փայլփլուն, անծայրածիր ու կանաչավուն հայելի: Բայց կարող է նաև այնպես լինել, որ նավը մտնի կապույտ ու խստակ գոտի: Եվ իմացեք, որ այստեղից սկսվում է իսկական օվկիանոսային անապատը: Օվկիանոսում կապույտ գույնը նույնն է, ինչ որ ցամաքում՝ դեղինը: Դա անապատի գույն է, աղքատ կյանքի գույն:

Ցամաքում կանաչ են հագնում մարգագետինները, անտառները, տափաստանները: Օվկիանոսում նույնպես կանաչ գույնը մարգագետին ու անտառ է նշանակում: Հատուկ, ծովային մարգագետին ու անտառ: Խոտերին ու ծառերին փոխարինում են այստեղ միլիարդավոր մանրիկ ջրիմուռները, որոնց մեջ արածում են միլիոնավոր մանրիկ էակներ: Իսկ որտեղ մեծ թը-

# ՍՏԵՂԵՐԱ ՄԱՂԱՔՅԱՆԻ

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Կան բույսեր, որոնք արտաքինից համարյա ոչնչով չեն տարբերվում շրջապատի բույսերից, սակայն իրականում մեծ հետաքրքրություն են ներկայացնում գիտության համար, քանի որ խիստ հազվագյուտ են և քիչ տարածված:

Եղեգնաձորի շրջանի Գնիշիկ գյուղի արոտավայրերում անցնող դպրոցականը հազիվ թե գուշակի, որ իրենց համար սովորական բազմամյա խոտերից մեկը, որն ունի 10—15 սմ բարձրությամբ դեպի վեր ցցված ցողուններ և դեղին ծաղիկներ, խիստ հազվագյուտ բույս է, քանի որ ամբողջ երկրագնդի վրա ուրիշ ոչ մի վայրում չի հանդիպում և աճում է միայն իրենց գյուղի հանդերում:

Դա ստելերան է, որը 1947 թվականին հայտնաբերել է բուսաբան Դմիտրի Սոսնովսկին և, ի պատիվ հայ անվանի բուսաբան Հարություն Մաղաքյանի, անվանել է «Մաղաքյանի ստելերա»:

Դուք այդ բույսը հեշտությամբ կարող եք ճանաչել հետևյալ նշաններով. բույսի ուղղաձիգ, խիտ տերևակալած, բայց հիմքի մասում համարյա տերևազուրկ, չճյուղավորված ցողունների թիվը չի անցնում 24-ից: Տերևները մանր են, 8—12 մմ երկարությամբ, 2—3 մմ լայնությամբ, էլիպսաձև, մերկ են կամ եզրերին ունեն նոսր մազմզուկներ, որոնք թարթիչներ են հիշեցնում: Կապտավուն են, կարճ տերևակոթուններով: Ծաղիկները դեղին են, դրսից կարմրավուն ծաղկախողովակով: Մոտ 15 ծաղիկ հավաքված է ոչ խիտ գլխիկանման ծաղկաբույլերում: Ծաղկապատի թերթիկները լայն-նշտարաձև են, 2—3 անգամ ավելի կարճ ծաղկախողովակից:

Աճում է մերձալպյան գոտու քարքարոտ լանջերում: Բավականին չորադիմացկուն և ցրտադիմացկուն է:

Ընդհանրապես երկրագնդի վրա ստելերաները հազվադեպ հանդիպող բույսեր են: Հայտնի են այդ ցեղի 20 տեսակներ, որոնք տարածված են Արևմտյան և Միջին Ասիայի լեռներում, Սիբիրում և Արևելյան Ասիայում:

Գիտնականների 30-ամյա որոնումները ցույց են տվել, որ խակապես ստելերա ցեղի այլ ներկայացուցիչներ Հայաստանում ընդհանրապես չեն հանդիպում: Մաղաքյանի ստելերան այս ցեղի միակ ներկայացուցիչն է մեր բնաշխարհում:

Այս հանգամանքը պարտավորեցնում է մեր հանրապետության բուսաբաններին, ողջ բնակչությանը, պահպանել այս անհետացող և հազվագյուտ բուսատեսակը: Դա միևնույն ժամանակ մեծ



*Ստելերա Մաղաքյանի*

պարտականություններ է դնում Եղեգնաձորի շրջանի Գնիշիկ գյուղի պիոներ-դպրոցականների վրա: Անհրաժեշտ է դաշտում որոնել-գտնել ստելերայի բուսուտները և հատուկ պահպանության տակ վերցնել: Որոշ վայրերում պետք է ցանկապատել բույսերը, որպեսզի անասունները չոչնչացնեն: Կարելի է հավաքել սերմերը՝ դպրոցամերձ հողամասում ցանելու, ուսումնասիրելու նպատակով:

Չպետք է մոռանալ, որ եթե այս տեսակը ոչնչանա, ապա երկրագնդի երեսից խսպառ կանհետանա միայն մեր մեղքով:

---

վով մանր կենդանիներ կան, այնտեղ անպայման ապրում են նաև խոշոր կենդանիներ: Կանաչ ջրում դուք կտեսնեք կետերի արձակած շատրվաններ և շնաձկների լողակներ: Դուք այնտեղ կհանդիպեք դելֆինների և թռչող, ճարպիկ ձկների: Եվ այդ ամենը ջրի երեսին: Իսկ ջրի տակ կյանքն ավելի հարուստ է:

Կապույտ ջրում բոլորովին ուրիշ պատկեր է: Ո՛չ մանրիկ ջրիմուռներ կան, ո՛չ էլ մանր խեցգետիններ: Ո՛չ ձկներ, ո՛չ շնաձկներ, ո՛չ էլ կետեր: Ջրային կապույտ անապատ: Եվ նույնքան անկյանք, որքան դեղին ավազե անապատը: *Թարգմ. ԴԵՐԵՆԻԿ ՍԱՐԻԲԵԿՅԱՆԻ*





ԳԱՐԵԳԻՆ ՄԿՐՏՉՅԱՆ











# ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆ ՄԱՂԹԵՆՔ

Ընդունված է ասել, որ երեխաները տասը տարեկանից հետո ավելի դժվարությամբ են նկարում, քան մինչ այդ: Նկարիչ-մանկավարժների երկար տարիների փորձն ու դիտումները հաստատում են այդ կարծիքը: Սակայն, այն երեխաները, որոնք տասը տարեկանից հետո էլ շարունակում են կյանքը պատկերել նույնքան գեղեցիկ ու հետաքրքիր, ուրեմն օժտված են անվիճելի ձիրքով, և հիմք կա ենթադրելու, որ նրանք նկարիչ դառնալու ապագա ունեն:

Այդպիսին է Ստեփանավանի Պուշկինի անվան դպրոցի 6-րդ դասարանցի, 13-ամյա Գարեգին Մկրտչյանը: Նա ուսման գերազանցիկ է, սիրում է արկածային գրականություն կարդալ, լսել հայ, ռուս և արևմտյան կոմպոզիտորների ստեղծագործությունները: Իսկ ամենից շատ Գարեգինը սիրում է նկարչություն: Դասական նկարիչներից սիրում է Ռաֆայել ու Լեոնարդո դա Վինչի, իսկ մեր ժամանակակից վարպետներից՝ Մարտիրոս Սարյան ու Գրիգոր Խանջյան:

Գարեգին Մկրտչյանը սիրում է յուղաներկով նկարել: Նա նկարում է Լոռվա հիասքանչ բնությունը, ճարտարապետական կոթողներ, իր մտերիմներին ու ընկերներին:

Կդառնա՞ Գարեգինը նկարիչ: Թվում է, թե՝ այո: Սակայն ո՞վ գիտե: Գուցե հասակ առնելու և գիտելիքները հարստացնելու հետ մեկտեղ, նրա մեջ երևան գան այլ ավելի բուռն ձգտումներ ու ձիրքեր, և նա գտնի իրեն ստեղծագործական ու աշխատանքային ուրիշ բնագավառում:

Բոլոր դեպքերում հաջողություն ենք մաղթում նրան:

ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆ

*«Պիոներ»-ի փոստից*

# ԽՈՍՔ ԸՆԿԵՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Մանկուց մինչև օրս ես և Գայանեն անբաժան ենք իրարից: Միասին մանկապարտեզ ենք գնացել: Միասին ոտք դրել դպրոցի շեմին:

Այժմ մենք նույն դասարանում ենք սովորում, նույն նստարանին նստում, միասին ենք դպրոց հաճախում, միասին վերադառնում տուն, դաս պատրաստում, շատ հաճախ էլ միասին ենք ճաշում:

Եթե մի տխուր դեպք է պատահում մեկիս՝ տխրում ենք միասին, եթե ուրախություն՝ ուրախանում ենք միասին: Եթե մի դժվար խնդրի առաջ ենք կանգնում մեկս կամ մյուսս, խորհրդակցում ենք իրար հետ:

Առանց այս մտերմության մեկանից ամեն մեկը շատ բան կորցրած կլիներ:

*ՀԱՄԵՍՏ ԴԱՐԲԻՆՅԱՆ*
*Ախուրյանի շրջան, գյուղ Ախուրիկ,*
*8-րդ Բ դասարան*

# «ՊԻՈՆԵՐ» ԱՄՍԱԳՐԻ ՀԱՐԳԵԼԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

*Գրում եմ ձեզ հեռավոր Մինսկից: Ես մի խնդրանք ունեմ, որը գուցե այնքան էլ ճիշտ չեմ հասցեագրում:*

*Դպրոցը վերջերս եմ ավարտել և այժմ սովորում եմ ինստիտուտում: Դեռ դպրոցում ինձ հետաքրքրեց հեռավոր Հայաստանն իր հնամյա պատմությամբ, լեգենդներով ու ներկայով: Ես հավաքում եմ այն ամենը, ինչ կապված է Հայաստանի հետ. գրքեր, ալբոմներ, նկարների վերատպություններ, բաժանորդագրվում եմ «Կոմունիստ» թերթին: Արդեն անգիր գիտեմ ձեր այբուբենը և ցանկանում եմ հայերեն սովորել, առավել մոտիկից ծանոթանալ այն երկրին, ուր շողշողում է բիբլիական Արարատը:*

*Եթե հնարավորություն ունեք, խնդրում եմ, օգնեցեք ինձ ձեռք բերել թեկուզ մաշված մի այբբենարան կամ դասագիրք:*

*Հարգանքներով՝ ՎԼԱԴԻՄԻՐ ԳՈԼՈՒԲԵՎ*
*Իմ հասցեն է՝*

Минск-33, ул. Велозаводская д. 4, кв. 11.

**Խմբագրության կողմից.**— Մենք Վլադիմիրին արդեն ուղարկել ենք իր խնդրած դասագրքերը: Փորձիր և դու օգնել նրան հետաքրքիր գրքերով, նկարներով, ձայնասկավառակներով, ինչով կարող ես:

Լույս է տեսնում 1923 թվականից

№ 6 հունիս 1977 թ.



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ԳԱՐԵԳԻՆ ՄԿՐՏՉՅԱՆԻ

---

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԽԱՍՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱԳՈՒՍՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՊԵՏՐՈՍՅԱՆ Թ., ՍԱՐԳՍՅԱՆ Լ. (պատասխանատու քարտուղար), ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:
Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:

ՎՖ 04351 Պատվեր 985: Տպաքանակ՝ 55406: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 14 VI 1977 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:





ՄԵՑՐԱՆ ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

ԳԻՆԸ 15 Կ.

# ԾԱՂԿԱԾ ԾԱՌԵՐԸ

Խելառ քամին իրեն կորցրած,
Տրորելով թուփ ու քար,
Ոտքը արնոտ, փեշը քշտած՝
Սլանում է ձորն ի վար:

— Քամի՛, քամի՛, զգո՛ւյշ մի քիչ,
Գնա՛ հուշիկ ու կամաց,
Զգո՛ւյշ եղիր, որ ծառերից
Ոչ մի ծաղիկ չընկնի ցած:

Երազներ են նրանք պես-պես
Ու ժպիտներ շողշողուն,
Թող այսօր էլ ծառերն այսպես
Ծաղկած մնան աշխարհում:

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

# ՊԱՊՍ



Մինչ ուշ երեկո վաղ առավոտից
Մեջքը խոնարհած պապն հունձ էր անում,
Քրտինքը ցած էր կաթում ճակատից,
Բայց նա չէր նստում, չէր հանգստանում:

Իրիկնամուտին իջնում կածանով,
Զոքում էր առվի քարքարոտ փեշին
Ու լվանում էր անարատ ջրով
Ճակատին իջած արևափոշին:

Հետո գլուխը հակած կուրծքն ի վար,
Խորհելով հողի ու հացի մասին,
Նա տուն էր դառնում խաղաղ ու անչար՝
Արևի վերջին ճառագայթն ուսին...

ԻՆԴԵՔՍ 77806